զէր խաղաղ անցրնել այդ ցոյցը, սակայն ոստիկանութիւնն է որ կռիւ հանեց։ Ուրիշ խորհրդական մը՝ Ժոլի, նոյնպէս հակառակեցաւ ոստիկաններու յաւելման եւ ըսաւ թէ եղածները լաւ գործածելով կարելի է նոր ծախքերու առաջքն առնել։

Քուէարկութենէն վերջ ոստիկանական տեսուչ Քիափ պատասխանեց համայնավար խորհրդականի դիտողութիւններուն, յիշեց թէ Օգոստոս 19ի ցոյցերուն 700 համայնավարներ յարձակեցան 18 ոստիկաններու վրայ, ասոր վրայ Օգոստոս 23ին կատարուած ցոյցերը ձախողութեան մատնուեցան։ «Որքան կ՚ուզէք զրպարտեցէք ոստիկանները, ես համամիտ եմ անոնց բոլոր արարքներուն»։

## Օսմանեան Հանրային Պարտքը

Օսմանեան Հանրային Պարտքի օտար պահանջատէրերու ներկայացուցիչներուն եւ Թուրք կառավարութեան պատուիրակներուն միջեւ Փարիզի մէջ տեղի ունեցած վերջին հանդիպումին կարելի եղած է վերջնական համաձայնութիւն կայացնել առկախ մնացած երկրորդական բոլոր խնդիրներու մասին։

Կը մնայ կարգադրել միայն Հանրային Պարտքի Վարչութեան խնդիրը, այն ալ պիտի կատարուի դիւանագիտական ճամբով։ Անգլիա կարգ մը դիտողութիւններ ներկայացուցած է ֆրանսական կառավարութեան, պահանջելով որ ինք ալ հաւասար չափով ձայն ունենայ յիշեալ Վարչութեան մէջ։

Թուրք կառավարութեան գլխաւոր պատուիրակ Շէֆիք պէյ, Տրապիզոնի երեսփոխան, որ երկար ատենէ ի վեր Փարիզ կը գտնուէր Հանրային Պարտքի պահանջատէրերուն հետ բանակցութիւնները վարելու համար, այս համաձայնութեան վրայ մեկնեցաւ դէպի Պոլիս, ուր պիտի տեսակցի ելմտական գործավար Սարաճօղլու Շիւքրի պէյի հետ եւ զեկոյց պիտի տայ ձեռք բերուած արդիւնքներուն մասին։

## Ֆրանքի կայունացումը կը մօտենայ

Նիւ Եորքէն Ֆրանսա 10 միլիոն տոլար արժէքով ոսկիի փոխադրութեան առթիւ կարգ մը շրջանակներու մէջ այն կարծիքը կը տիրէր թէ վարչապետ և ելմտական նախարար Փուանքարէ կը մտածէ խիստ մօտ ատենէն պաշտօնապէս կայունացնել ֆրանքը։

Նախարարական խորհուրդի նիստէն վերջ, այս մասին իրեն ուղղուած հարցումներուն պատասխանելով, վարչապետը բացարձակապէս հերքեց թէ Յունուար ամսուան ընթացքին ֆրանքը պիտի կայունացնէ։

## Նոր ընտրութիւնները Ապրիլ 22ին եւ 29ին

Տեղական թերթի մը համաձայն, 1928ի խորհրդարանային ընտրութիւնները պիտի կատարուին Ապրիլ 22ին եւ 29ին։ Ներկայ երեսփ. ժողովին շրջանը կը լրանայ Մայիս 31ին եւ նորընտիր ժողովը պիտի գումարուի Յունիս 1ին։ Երեսփ. ժողովի 1928ի սովորական նստաշրջանը, որ պիտի բացուի Յունուար 10ին, շուտով պիտի փակուի, որպէսզի երեսփոխանները ժամանակ ունենան իրենց ընտրական շրջանակները մեկնիլ՝ ընտրական պայքարի համար։

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Վիէնի Շրջ. կոմիտէին կողմէ, 3 Յունուար Երեքշաբթի իրիկուն ժամը 7.30ին, Փոնթէվէքի Հայ ժողովրդային սրահը։

Կը խօսին ընկ. Գույումճեան՝ «Քաղաքական ներկայ մոմենտը» եւ Տօքթ. Աշոտ Գասպարեան՝ «Հ. Յ. Դ. Աշխարհահայեացքը»,

Կը հրաւիրուի գաղութին երկսեռ հայ հասարակութիւնը ներկայ գտնուելու ճիշտ ժամանակին։

### ՅԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Փուժէ-Սիւր Արժանի «Վռամեան» ենթակոմիտէին եւ մասնակցութեամբ Քանի եւ Կլասի քոյր խումբերուն, Այսօր Կիրակի առաւօտ ժամը 10ին, Փուժէի Սինէմային մէջ։ Շրջականերէն եկողներու դիւրութիւն տալու համար կայարանը կը սպասուի։

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Լիոն, Գ. Պ.— 50։
Վիէն, Ա. Խ.— 37։
Լա-Սէյն-Սիւռ-Մէռ Խ.Պ.—35։
Վիէն, Հ. Ո,— 225,
Պերլին, Տքթ. Գ.— 200։
Մարսէյլ, Հ. Ճ.— 140։
Նիս, Մ. Խ.— 70։
Տէսին, Յ. Շ.— 75։
Մարթիք, Ե. Գ.— 70։ Կրնաք կարգադրել։ Ն.ի հաշիւը փակած ենք։
Վիլֆռանշ, Յ. Զ.— 70։
Մարթիք, Յ. Գուլ.— 43։
Փարիզ, Ղ. Զ.— Տեղեկութիւն չունինք։ Դիմեցէք «Հայրենիք»ին։
Փարիզ, Ա. Լ.— 105։
Լիոն, Յ. Թ.— 70։
Նիս, Մ. Փ.— 100։
Փիւժէ, Կ. Մ.— 35։
Սէն Թ՚ըպան, Յ. Զ.— 140։
Կառտան, Յ. Գ.— 140։
Ցիկառ, Պ. Տ.— 5։
Մարսէյլ, Խ. Յ.— 140։
Կառտան, Խ. Ս.— 80։
Սէն Թ՚էթիէն, Ս. Խ.— 70։
Փարիզ, Տ. Գ.— 190։ Կարգադրեցինք։
Պիւէթր, Խ. Թ.— 105։
Երուսաղէմ, Գ. Բ.— 1 ոսկի։
Մարսէյլ, Վ. Թ.— 100 ֆր.։
Մարսէյլ, Ղ. Տ.— 100։
Լա Սէյն սիւռ մէռ, Յ.Պ.—105։
Ֆուժիւս, Զ. Պ.— 100։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

Թեամրան հանրմները քրիստոնեայ դարձած են եւ թէ անոնք կիրակի օրեր Բողոքականներու եկեղեցին կ'երթան։ Նոյնիսկ անցեալ կիրակի իրենց ուսուցչուհիներուն հետ միասին եկեղեցի գացած են։ Վարժարանին աշակերտուհիներէն Իզմիրցի վէտիա հանըմն էր որ դէպքը իմացուցած էր։ Բօլէճին բոլոր աղջիկները խռված են։ Աշակերտուհիները երեք խումբի բաժնուած են. բողոքական, չէզոք եւ հակաբողոքական։ Ապացուցուած է թէ քրիստոնեայ դարձուած երեք աղջիկները ամերիկեան դրօշներով զարդարուած են եւ այդ կերպով տօնուած է անոնց քրիստոնէացումը։

## Զինովիեւ եւ Կամենեւ խնչո՞ւ ղեցին

Մոսկուայի պաշտօնաթերթ «Պրաւդա» կը հրատարակէ Զինովիեւի եւ Կամենեւի կողմէ իրեն ուղղուած նամակ մը, որուն մէջ կ'ըսեն թէ իրենք բաժնուած են Տրոցկիի խմբակէն, նկատելով որ վնասակար է երկրորդ կուսակցութիւն մը ստեղծել, ու նկատելով որ պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական շահերը կը պահանջեն պայքարէ հրաժարիլ։

Գալով տրոցկիական կեդրոնին կողմէ արտասահմանի իր կողմնակիցներուն տրուած հրահանգներուն, Զինովիեւ եւ Կամենեւ վեր կը հանեն թէ տրոցկիականները կ'աշխատին Խորհ. Միութեան հակառակ աջ խմբակցութեանց օժանդակութիւնը ձեռք բերել։

Զինովիեւ եւ Կամենեւ ասկէ զատ կը հրաժարին ընդդիմադիր խմբակցութեան հաստատած ծրագրէն։ Կը յայտարարեն թէ իրենց գործունէութեան մէջ պիտի առաջնորդուին 15րդ Համագումարի որոշումներով եւ վստահութիւն կը յայտնեն թէ նախկին ընդդիմադիրներու մեծ մասը կուսակցութեան հետ հաշտուելու ճամբուն պիտի հետեւի։

«Պրաւդա» գոհունակութեամբ կ'արձանագրէ Կամենեւի եւ Զինովիեւի այս յայտարարութիւնը եւ կ'ըսէ թէ ատիկա պիտի դիւրացնէ իրենց վերադարձը կուսակցութեան մէջ։

## Պեսարաբիոյ տարեդարձը

Մոսկուայէն կը հեռագրեն թէ խորհրդային թերթերը բուռն յօդուածներ կը հրատարակեն Ռումանիոյ կողմէ Պեսարաբիոյ կցման տասներորդ տարեդարձին առթիւ։ Թերթ մը կը գրէ. «Ռումանացիները կը պնդեն թէ Պեսարաբիան յաւիտեան իրենցն է, սակայն անոնք գիտեն թէ օտար տիրապետութեան վախճանը մօտալուտ է եւ հրդեհն ու ջարդերը պիտի լուսաւորեն ապստամբներու ճամբան։ Այս մասին խորհրդային կառավարութեան քաղաքականութիւնը ծանօթ է։ Տնիեսթերը չի կրնար ըլլալ անանցանելի ցանկապատ մը, որ Պեսարաբիացիները զատէ իրենց ռուս եղբայրներէն։»

Պոլշեւիկ վիճակագրութեան մը համաձայն, վերջին տասը տարուան ընթացքին Պեսարաբիոյ մէջ 155 ապստամբութիւններ ծագած են եւ Ռումանացիները այս առթիւ սպաննած են 30,000 Ռուսեր։ Մինչ Պուքրէշի պատերազմական նախարարութեան թիւերը կ'ըսեն թէ 15,514 Պեսարաբիացիներ սպաննուած են ապստամբութեանց ընթացքին։

Մամուլը կը մեղադրէ վարչապետ Փուանքարէն եւ համաձայնական պետերը, որոնք Վէրսայլի հաշտութեան համաժողովին մէջ «անամօթօրէն կողոպտեցին Պեսարաբիան, երբ ռումէն բանակները խուժեցին նահանգին վրայ՝ իբրեւ գիշերային գող»։

## Խուժիստանի ապստամբութիւնը

Պասրայէն կը հեռագրեն թէ Խուժիստանի պարսիկ զինուորական էմիրը քանի մը օր առաջ հրատարակած է արաբերէն լեզուով յայտարարութիւն մը, որմէ կ'երեւայ թէ Բասրայի եւ Խազալապատի միջեւ գտնուած շրջանը տակաւին ապստամբ ցեղախումբերու ձեռքը կը գտնուի։

«Խազալապատի մէջ կը մնամ, կը յայտարարէ էմիրը, եւ խորհուրդ կուտամ ձեզ ցրուելու, յանձնել ձեր զէնքերը եւ երեք օրուան մէջ վճարել տուրքերը, եթէ կ'ուզէք որ ձեր օջախները քանդումէ փրկուին։»

«Թայմզ»ի թղթակիցը, որ կը հաղորդէ վերի լուրերը, կ'աւելցնէ թէ էմիրը իր յայտարարութեան վերջը միտքը փոխելով երեք ամիս պայմանաժամ կուտայ տուրքերը վճարելու եւ զէնքերը յանձնելու համար։ Էմիրը կը հրաւիրէ նաեւ այն գիւղացիները որոնցմէ պաշտօնեաները դրամ կորզած են՝ որ դիմում կատարեն իրեն։

Առ այժմ կացութիւնը թէեւ հանդարտած է, սակայն մթնոլորտը դեռ ծանրաբեռնուած է եւ ոեւէ ժամանակ կրնայ դարձեալ բռնկիլ։ Նահանգին անունը պիտի մնայ Արաբիստան, հակառակ իր պարսկական նոր Խուժիստան անունին։ Պարսիկ կառավարութիւնը շատ բան կը պարտի Իրաքի կառավարութեան, որ արագօրէն պահականոցներ հաստատեց Պասրայի եւ Ֆաօի միջեւ եւ շոգեմակոյկներ տրամադրեց սահմանագլուխին վրայ հսկելու համար, որպէսզի ապստամբները սահմանը չանցնին։ Այլապէս ապստամբութիւնը կարելի պիտի չըլլար դիւրաւ զսպել, որովհետեւ ըմբոստները հասկնալով որ ուրիշ տեղ ապաստան չպիտի կրնան գտնել, անձնատուր կ'ըլլան։

## Ձերբակալութիւններ Ռուսիոյ մէջ

«Տէյլի Մէյլ»ի Ռիկայի թղթակիցը կը հեռագրէ թէ ռուս գիւղացիները պոյքոթ հռչակած են խորհրդային առեւտրական կազմակերպութեանց դէմ։ Կառավարութիւնը զանգուածային կերպով ձերբակալած է այն վաճառականները, որոնք միջնորդի դեր կը կատարէին գիւղացիներուն եւ հացագործներուն միջեւ։ Վերջին 15 օրուան մէջ 10,407 գիւղացիներ ձերբակալուած են, 13000 ռուբլին արժէքով տուգանք գանձուած է եւ երեւան հանուած են 3393 գաղտնի զտարաններ, ուր ցորենէն օղի կը պատրաստէին։ Այս խիստ միջոցներուն շնորհիւ այժմ գիւղացիները մէջտեղ կը հանեն իրենց ցորենները։

## Մահ Պլասքօ Իպանեզի

Սպանիացի մեծ վիպասանը, որ կը տառապէր շաքարախտէ, թոքատապի բարդութեամբ մը մեռաւ երէկ առաւօտ։ Հանրապետական, Իպանեզ վերջին քաղաքական դէպքերուն պատճառով փախած էր Սպանիայէն։ Ու կ'ապրէր Ֆրանսայի հարաւը, գեղեցիկ վիլլայի մը մէջ։ Իր վէպերէն «Կնոջ թշնամիները» թարգմանուած է հայերէնի։







### ՀԱՅԱՍԻՐԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹՆԵՐ

Ֆրանսական հայասիրական բողոքական կոմիտէն շարք մը դասախօսութիւններ սարքած է «Սուրիոյ եւ Ֆրանսայի հայ գաղթականներուն մասին»։

Սթրազպուրկի հովիւ P. Berron մոգական լապտերով ցոյց պիտի տայ զանազան տեսարաններ։

Այսօր Կիրակի ժամը 17ին Église de l'Etoileի մէջ, 54 Avenue de la Grande Armée, հանդիսաւոր ներկայացում Փարիզի շրջանի հայ Բողոքականներու նոր քարոզիչ Պ. Ղազարոսեանի։

Իրիկունը ժամը 20.30ին Église Méthodiste d'Asnières, 32 Avenue de la Marne, Asnières, կը նախագահէ հովիւ Guiton.

Վաղը Բշ. ժամը 8 30ին Salle de l'Annonciation, rue Lekain, Paris (16e), կը նախագահէ Փրոֆ. Ֆրէտէրիք Մաքլէռ։

Երեքշաբթի ժամը 20.30ին Chapelle du Luxembourg, 58 rue Madame, Paris (6e), կը նախագահէ հովիւ R. Hollard.














IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

